**1917** № 27—ՅՈՒԼԻՍԻ 16 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳՐԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ



10 կոպէկ Լոյս է տեսնում կիրակի օրերը 10 կոպէկ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի. Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ Թիֆլիս, Արասամբաղեան հրապար. № 7· Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.— Тифлисъ, „Амбаваберъ", Tiflis, Rédaction du journal «Hambavaber».



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՕՐՈՒԱՅ ՉԱՐԻՔԸ

Անդրկովկասեան գաւառներից ամենայն օր ստացւում են յուզիչ լուրեր երկրի անիշխանական դրութեան մասին։

Ամեն տեղ զգացւում է կարգի և իշխանութեան բացակայութիւն. ամեն տեղ նկատւում է օրէնքի անհետացում։

Չկայ երկրի մէջ տէր ու տնօրէն. չկայ կառավարական ոյժ, որը կարողանար խռովարարներին հպատակեցնել օրէնքին, որը պաշտպանէր խաղաղ ժողովուրդը բռնութիւններից։

Աւազակային խմբերը բազմանում են սունկի պէս։

Սպանութիւններ, կողոպուտներ և այլ տեսակ բռնութիւններ ստացել են քրոնիկական բնոյթ։

Ցանցառները յաճախ կատարւում են հրապարակաւ, օրը ցերեկով, ժողովուրդի առաջ։ Ցանցառները մեծ մասամբ չեն ձերբակալւում, բանտարկւում, պատժւում. նրանք ազատ շրջում են և շարունակում իրենց սրիկայութիւնը։

Ցրէական տարրերը, մութ, խուլիգանական ոյժերը գլուխ են բարձրացրել, գործում են անխրկիւղ. մի նրանցից իր հաշիւներն է մաքրում հին թշնամիների հետ հըրով և սրով. մի աշխատում է օգտուել խառն ժամանակից և հարստանում է ուրիշի ունեցածը բռնի կերպով։

Ցանցառի ընդունակ տիպին մէկ յաջող դէպքը խրախուսում է կատարել նոր սխրագործութիւններ, քանի որ նա իր դէմ չի տեսնում հակադիր ոյժ, չի զգում պատժի սպառնալիք։

Այսպիսի գոյներով է նկարագրւում մեր գիւղացութեան դառն իրականութիւնը. նա անապահով է իր տանը, անապահով է և դաշտում, և ճանապարհում, երբ դուրս է գալիս աշխատելու, կամ ուղեւորւում է իր վայրից մի ուրիշ տեղ։

Մխիթարական չէ կեանքը և քաղաքներում, մանաւանդ գաւառական։

Այս տեսակէտից Երեւանը ու Երեւանի նահանգը համեմատած ուրիշ տեղերի հետ՝ գտնւում է բացառիկ վատ դրութեան մէջ։

Քաղաքի մէջ կատարւում է աւերում, կողոպտւում է շուկան, սպանւում և վիրաւորւում են մարդիկ. իսկ

նահանգում, բացի տեղական աւազակներից, այդ գիշատիչներից, որոնք կատարեալ պատուհաս են աշխատաւոր ժողովուրդի համար, սկսել են արշաւանքներ կատարել նոր նուաճուած երկրներից նաև քիւրդերն՝ մեծ և լաւ զինուած խմբերով, վնասելով հայ, մասամբ և ռուս ազգաբնակութեան։

Այդ հրոսակային խմբերը յարձակւում են բազմաթիւ գիւղական շրջանների վրայ. սրբում տանում են տաւար, ոչխարի հօտեր, ձիաների իլխաներ, ներկելով իրենց ճանապարհը մարդկային արիւնով։

Անզէն ու անպատսպար ժողովուրդը անզօր է պաշտպանելու իրեն՝ զինուած և կազմակերպուած ոյժերի դէմ. աւերւում է գիւղացու քրտինքով երկար տարիների ընթացքում վաստակածը, լինում են և մարդկային անմեղ զոհեր։

Եթէ ժողովուրդը անզօր է դրսից արշաւող աւազակային խմբերի վերաբերմամբ, նա անողորմ է դէպի այն անձինք, որոնք մեղադրւում կամ կասկածւում են այս կամ այն յանցանքի մէջ և ընկնում են նրա ձեռքը։

Ժողովուրդը, տեսնելով, որ օրէնքը և իշխանութիւնը ենթարկուած են պարալիզէի, ուժասպառ են, որ նրանց գոյութիւնը իրականօրէն չէ արտայայտւում, որ նրանք կորցրել են իրենց ազդեցութիւնը, յուսահատւում է, և ահա թէ ինչու նա երբեմն, համբերութիւնը կորցրած, կատարում է ինքնագլուխ դատաստան և յանցանքների մէջ մեղադրուողներին ենթարկում է քարկոծման, հրապարակական մահուան։

Այս տեսակ յաճախ կրկնուող դէպքերը պարզ կերպով ապացուցանում են իշխանութեան թուլութիւնը, եթէ ոչ կատարեալ բացակայութիւնը։

Անկարելի է չը սոսկալ այս երևոյթների առաջ. ամբոխը չի կարող դատաւոր լինել և ոչ ոք չը պէտք է պատժուի նրա ձեռքով։

Երբ դատաստանը կատարում է ամբոխը, խախտւում է արդարութեան գաղափարը. ամբոխը գտնւում է կրքերի ազդեցութեան տակ, վայրկեանի տպաւորութեան ներքոյ, հետևապէս նա քննութիւն չէ կատարում, չէ որոնում ճշմարտութիւնը, երբ միայն հնարաւոր է ջոկել մեղաւորին անմեղից. բացի այս բացասական կողմից, ինքնագլուխ, ամբոխային դատաստանը փչացնում է ժողովուրդին և բարոյապէս, զարգացնելով նրա մէջ վրէժխնդրութիւն, բթացնելով նրա մէջ մարդկային նուրբ զգացմունքներ։

Եւ այդ տեսակ ժողովուրդը իր ապագայ սերունդներին կը տայ աւելի մեծ թւով յանցագործներ։

Ահա թէ ինչ վտանգ է սպառնում։

Մարդու կեանքը, նրա ամենամեծ դպրոցը—այն շրջանն է, այն հասարակութիւնը, որի մէջ նա ծնւում և զարգանում է։

Եթէ վայրկեանի սուր հանգամանքները պահանջում են երբեմն գործադրել ամենախիստ միջոցներ, այնուամենայնիւ այդ պէտք է կատարուի նախ օրէնքի հիման վրայ և երկրորդ՝ պատշաճաւոր, օրինական իշխանութեան միջոցով։

Դրութիւնը աւելի լուրջ է, քան թէ կարելի էր ենթադրել։

Թողնել երկիրը այս դրութեան մէջ այլևս անկարելի է։ Անհրաժեշտ է դիմել վճռական միջոցների, հակառակ դէպքում առաջ կը գան աւելի վատ և վտանգաւոր երևոյթներ, ներքին մեծ խռովութիւններ։

Երկրի կառավարութիւնը յանձնուած է առանձին կոմիտէին, կոմիսարիատին։ Երեք ամսից աւելի է, որ այդ կոմիսարիատը գերիշխանութեան մէջ է, սակայն մինչև օրս նա չի կարողացել հաստատել կարգ ու կանոն, չի կարողացել ժողովուրդի կեանքն ու կայքը պաշտպանելու համար ստեղծել տեղական և իրական իշխանութիւն, թէև մշակել է ծրագրեր։

Օր ըստ օրէ վատթարացող կեանքի շնորհիւ՝ ժողովուրդը կորցնում է իր վստահութիւնը, հաւատն ու յոյսը դէպի Անդրկովկասեան Կոմիտէն, իբր կառավարութեան։ Երկրում իրաւակարգ հաստատելու համար, Անդրկովկասեան Կոմիտէն մշակել է ծրագիր՝ մտցնելու գործադիր մարմիններ՝ բաղկացած ժողովուրդից ընտրուած և նրա վստահութիւնը վայելող անձերից։

Բայց հարց է ծագում, թէ արդեօք միայն դրանով խնդիրը լուծւում է, դրանով ժողովուրդը բաւարարութիւն կը ստանայ։

Այժմ էլ կան նորագոյն գործադիր մարմիններ գիւղերից սկսած մինչև նահանգական քաղաքները։

Սակայն ինչ օգուտ այդ մարմիններից, քանի որ նրանք չունին այն ոյժը, այն միջոցները, առանց որի անկարելի է գործ կատարել։

Ամեն մի գործադիր մարմին միայն այն ժամանակ կարող է արդարացնել իր կոչումն, երբ նրա ձեռքի տակ կայ ռէալ ոյժ, որի միջոցով միայն նա կարող է պահպանել կարգը, որի միջոցով նա կարող է թոյլ չը տալ կարգի խախտումն, յանցագործութիւն, բռնութիւն, որպէսզի ժողովուրդը զգայ իրեն ապահով և կարողանայ զբաղուել իր խաղաղ աշխատանքով։ Գործադիր մարմիններին հարկաւոր ռէալ ոյժը ժողովրդական միլիցիան է, որի քանակն ու որակը պէտք է համապատասխանի ժամանակի պահանջին և նրանց վրայ դրուելիք պարտականութիւններին։

Գործադիր մարմինների ամեն մի բարի ցանկութիւնը չքանում է, քանի որ իրագործելու համար չունին ոյժ, այն է՝ ժողովրդական միլիցիա։

Իսկ միլիցիա կազմելու համար հարկաւոր են երիտասարդ ոյժեր և նիւթական միջոցներ։

*Այժմ չկայ ո՛չ մէկը և ո՛չ միւսը։ Մեր գիւղերի երիտասարդութիւնը համարեա ամբողջութեամբ պատերազմի դաշտումն է, մնացած ժողովուրդից էլ միլիցիա կազմելու համար կառավարութիւնը բաց չի թողնում բաւարար նիւթական միջոցներ։*

*Խնդիրը այնուամենայնիւ պէտք է առնայ իր բաւարար լուծումն և դրա լուծումն պարտաւոր է յանձն առնել Անդրկովկասեան Կոմիտէն. նա այս խնդիրը պէտք է համարի իրեն համար գլուխ գործոց, նա պէտք է ամեն ջանք գործ դնի՝ տալ գաւառներին և քաղաքներին հարկաւոր քանակութեամբ և լաւ կազմակերպուած միլիցիա։*

*Այդ միլիցիան պէտք է կազմել մասամբ տեղական ժողովրդի միջից, նշանակելով ժամանակի թանկութեան համապատասխան ռոճիկ, մասամբ, դուցէ գլխաւորապէս, պատերազմ գնացած զինուորներից։*

*Փաստ է, որ կառավարութիւնը այժմ ունի աւելի մեծ թուով զինուորներ քան թէ հարկաւոր է. դրանց խոշոր մասերը գտնւում են թիկունքում, ցրուած են երկրի զանազան մասերում, առանց գործի, և զբաղուած են միտինգներով։ Այդ զօրամասերը բաղկացած են գլխաւորապէս պահեստի զինուորներից։ Անդրկովկասեան Կոմիտէն պարտաւոր է առանց յետաձգելու դիմել հետևեալ միջոցների. առաջին՝ հարց յարուցանել Ժամանակաւոր Կառավարութեան առաջ, որ անմիջապէս նոր վարկ բացուի միլիցիա կազմելու համար։*

*Երկրորդ՝ միջամտել զինուորական բարձր իշխանութեան առաջ, որ գիւղերից տարած զինուորների մի մասը յետ ուղարկուի՝ ծառայելու իրենց գիւղական գաւառական միլիցիայում. այդ ծառայութիւնը համահաւասար է ներկայ հանգամանքներում պատերազմի դաշտի ծառայութեան.*

*Երրորդ՝ այժմեանից որոշել և յայտարարել միլիցիայի կազմը և պայմանները, ցուցակագրելով ցանկացողներին, որ երբ վարկը բացուի, իսկոյն հրաւիրուեն ծառայութեան։*

*Եթէ Անդրկովկասեան Կոմիտէն այս գործը դարձնի իր գլխաւոր զբաղմունքը և սրա համար նա չը խնայի ո՛չ աշխատանք, ո՛չ ժամանակ և յաջող ելքի հասցնի, նա կատարած կը լինի ամենամեծ գործը։ Հակառակ դէպքում, թող ներուի մեզ ասել, որ այն բոլոր ծրագրերը, որ մշակւում են պալատում զանազան կառավարչական ճիւղերի գործունէութիւնը կանոնաւորելու համար, կը մնան մեռած, առանց դրական հետևանքի և դրական օգտի ժողովուրդի համար։*

*Նախ հարկաւոր է հաստատուն և ուժեղ վարչական կարգ։ Եթէ շուտափոյթ իրաւակարգ չը հաստատուի, թէ Պետրոգրադի Ժամանակաւոր Կառավարութիւնը և թէ Անդրկովկասի Կոմիտէն կարող են կորցնել իրենց հեղինակութիւնը։*

*Այդ երևոյթը միանգամայն ցանկալի չէ և չը պէտք է տեղի ունենայ։*

*Պէտք է յուսալ, որ Անդրկովկասեան Կոմիտէն ամեն ջանք գործ կը դնի արդարացնելու ժողովուրդի յոյսն և սպասելիքը՝ այս ամենաէական և կենսական խնդրում։*

*Ս. Յարութիւնեանց*

## ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՏԱԳՆԱՊԸ

*Ռուսական յեղափոխութեան գլխին սկզբից ի վեր սաւառնում էին մութ ոյժերի գիշատիչ ուրուականները։ Նրանք ամեն տեղ էին՝ թիկունքում ու ռազմաճակատում և ընկերվարական դիմակի տակ թունաւորում զօրքի և բնակչութեան մտքերը։*

*Ընկերվարականների այդ հոսանքը, որ «բոլշևիկ» անուան տակ յայտնի է Ռուսաստանում, ազատ ասպարէզ գտնելով իր ագիտացիայի համար, կարողացաւ արգասաւոր հող պատրաստել և հակայեղափոխական մթնոլորդ ստեղծել։*

*Հակայեղափոխական այդ շարժումը այնքան ճարպիկ և այնքան խորամանկ կերպով պատրաստուած էր, որ շատերի համար անսպասելի եղաւ վերջին արիւնալի ցոյցերը։*

*Գերմանիան իր լրտեսական հանճարը, իր «ոսկիների» գերաւիչ փայլը ի սպաս դրած էր այդ շարժման, որ այնքան մեծ նշանակութիւն ունէր իրա համար։*

*Յեղափոխական կառավարութեան հեղինակութիւնը սկսել էր խոշորանալ երկրում. նրա ազդեցութիւնը տարածուել էր երկրի ամենախուլ անկիւններն անգամ։ Այդ հեղինակութիւնը պէտք էր կոտրել, երկիրը անիշխանութեան մատնելու և քայքայելու համար։*

*Ռուսական զօրքերը սկսել էին յարձակման Աւստրիական ճակատում և մեծ յաջողութիւն գտել։ Վերցուած էր 36,000-ի մօտ գերի և անհամար ռազմամթերք։ Կազմալուծուած բանակը սկսում էր կազմակերպուել ու բարոյապէս բարձրանալ։ Գերմանիային սպառնում էր մի սոսկալի հարուած ռուսական ճակատում, ուր թշնամին քիչ ոյժեր ունէր և դիմադրելու նուազ միջոցներ։*

*Թշնամու ռազմական ոյժի գերիշխող մասը զբաղուած էր արևմտեան ճակատի վրայ, անգլօ-ֆրանսական առաջխաղացումը կասեցնելու համար և խիստ դժուար պիտի լինէր այդ ոյժը ջլատել և փոխադրել արևելեան ճակատը, ռուսների յարձակումն զսպելու։*

*Միակ միջոցը, որ կարող էր ռուսական հետզհետէ աճող ոյժը կոտրել, միակ միջոցը, որ կարող էր թէ թիկունքում և թէ ճակատում յեղափոխական բանակի բարոյական տրամադրութիւնը քայքայել,—այդ լրտեսական թոյնն էր, ներքին պառակտիչ որոմը։*

*Ներքին հակահարուածը պատրաստուեցաւ շատ ճարպիկ կերպով և այն վայրկեանին, երբ Ուկրայինայի անկախութեան պատրուակով կադետ մինիստրները հեռացան Ժամանակաւոր Կառավարութիւնից և առաջ եկաւ կառավարական կրիզիս, այդ վայրկեանին պայթեց հակայեղափոխական հարուածը, կազմակերպուած մեծամասնական համարուած «ընկերվարական» դիմակի տակ գտնուողների և գերմանական լրտեսների կողմից։*

*Եղան արիւնալի միջադէպեր մայրաքաղաքում. բայց բարեբախտաբար Ժամանակաւոր Կառավարութիւնը շուտով խելքի եկաւ և կարողացաւ զսպել շարժումը։*

*Երբ մայրաքաղաքում հակայեղափոխական տարրերը դա-*

ւաճանում էին հայրենիքին, գերմանացիները քաջ տեղեակ և հեղինակ այդ բոլորին, խուժեցին ռուս զօրքերի դէմ և պատռեցին ճակատը։

Յեղափոխական շունչով բոցավառուած ռուս զինուորի ոգին վայրկենապէս շիջաւ և նա գլխապատառ նահանջել սկսեց, թըշնամու շատ նուազ ոյժի առջևից։

Հակայեղափոխական թոյնը վարակել էր ռուս զինուորների սիրտը, կոտրել նրանց յարձակողական ոյժը և դարձրել անգիտակից ու հալածական մի հօտ...։

Թշնամին այդ կերպով հասաւ իր նպատակին, պառակտեց երկրի ոյժը և վրէժն առաւ յունիսի 18-ին սկսուած ռուս բանակի փառապանծ արշաւանքից։

Նա թէ ճակատում և թէ թիկունքում կարողացաւ իր սադրանքների և մեքենայութիւնների պտուղը վայելել։

Այս սարսափելի խռովութիւններից և աղէտներից յետոյ, մնում էր յեղափոխական կառավարութեան ուղղել իր սխալները և վճռական ու ազդու միջոցների ձեռնարկել դաւաճանների ու խռովարարների դէմ։

Կտրուկ և վճռական միջոց թէ թիկունքում և թէ ճակատում։ Այն տարրերը, որոնք դաւաճանում են երկրին, կառավարութեան, նրանք պէտք է ոչնչանան և արմատախիլ լինեն։

Հակայեղափոխական վարակիչ թոյնը պէտք է խեղդել իր բնում և նրա տեղ ներշնչել հայրենասիրութեան և կարգապահութեան հզօր ոգին։

Առանց կարգապահութեան և հնազանդութեան՝ երկիրը չի բարձրանալ իր անկեալ վիճակից։

Յեղափոխական կառավարութիւնը իր ոյժը պիտի տարածի երկրի ամեն կողմ, ամեն շրջանի և մասի մէջ։

Կառավարութիւնը վստահ իր ժողովրդական և յեղափոխական դաւանանքի ճշմարտութեան, պէտք է մահացու հարուած տայ ամեն մէկ շարժումին, որ կը գայ երկրի վտանգաւոր տարրերի և մութ ոյժերի կողմից։

Միայն վճռական ոյժը կարող է ազատել տնտեսական, զինուորական ու բարոյական կողմերից քայքայուած Ռուսաստանին։

Ռուսական այլատարր, հսկայ և յետամնաց ամբոխի «ճառերով» ու «գաղափարներով» չէ այնքան, որ կը շարժուի, այլ տարերային ոյժերով, յախուռն բնազդներով. միայն այդ ոյժերին հակակշռող ոյժ կարող է նրան զսպել և ցանկալի ճանապարհի վրայ դնել։

*Ալ. Մանուկեան*

---

# ԳՐԱԿԱՆ ԱԿՆԱՐԿՆԵՐ*)

## II

«Այժմ արդէն մահմեդական բոլոր ազգերը կախումն ունին եւրոպական պետութիւններից։ Մի քանիսի կախումն ունենալը պաշտօնական է և բացարձակ։ Եւրոպացիները նուաճել են նրանց, հպատակեցրել և անմիջական իրենց կառավարութեան տակն առել։ Ուրիշները գտնւում են եւրոպական այս և այն պետութեան հովանաւորութեան տակ. օրինակ՝ Բուխարան, Եգիպտոսը, Թունիսը»...

Այսպէս է սկսում Մահմէդ Շախթախթինսկին իր յօդուածը, որի վերնագիրն է դրել՝ «Մահմեդական կենսունակութեան տագնապը»։ Եւ յիրաւի, աւելացնում է նա ցաւագինօրէն—

*) Տես «Համբաւաբեր» № 26։

«Մենք, մահմեդականներս, վաղուց գիտենք որ վտանգաւոր տագնապի մէջ ենք գտնւում, որ մեր անյաջողութիւններն ու թշուառութիւնը խոշոր են, ակներև ու շօշափելի և որ անտես անել այդ ամենը՝ այլ ևս անհնար է»։

Անգլիան, Ֆրանսան և Հոլանդիան ունին մեծ թուով մահմեդական հպատակներ։ Ինչու է—հարցնում է Շախթախթինսկին—որ այդ երկիրների մէջ մահմեդականները քաղաքացիական որևէ իրաւունքների տէր չեն։ Այդ երկիրներում պետութեան գործերի վիճակը տնօրինում են պարլամէնտները։ Ինչու է ուրեմն, որ պարլամէնտների մէջ չեն թոյլ տրւում մահմեդական պատգամաւորների, որոնք կարողանային իրենց միլիոնաւոր հաւատակիցների գանգատները և ցանկութիւնները առաջադրել։ Ինչու է մահմեդականը այդ երկիրներում զրկուել ընտրելու և ընտրուելու իրաւունքներից։

Եւ վերջապէս, կա՞յ գոնէ մի հատ պետական մահմեդական պաշտօնեայ այդ երկիրներում, մի հատ զինուորական, մի հատ սպայ, կամ նոյն իսկ զինուոր և ոստիկան։

Չը կայ։ Եւ ինչու արդեօք չը կայ. ինչու այսքան ժամանակ այդ հարցը չի հետաքրքրել որևէ մահմեդականի և նա չի որոնել պատճառները։

Մինչդեռ պատճառները շատ պարզ են։ Պարզ և վշտացուցիչ։ «Եւրոպացիները մահմեդական բոլոր ցեղերին համարում են անքաղաքակիրթ և դրա համար էլ անարժան քաղաքացիական այնպիսի իրաւունքների, որոնք, նրանց կարծիքով, ըմբռնելի կարող են լինել միմիայն քաղաքակիրթ ազգերի»։

Պարզ է։ Ալժիրիական արաբներին, օրինակ, ֆրանսացիք չեն տալիս որևէ քաղաքացիական իրաւունք և ազատութիւն, մինչդեռ ամեն ֆրանսացի այնտեղ իր իրաւունքների տէրն է այնպէս, ինչպէս Ֆրանսայում։ Հնդկաստանում մահմեդական ազգաբնակութիւնը նոյնպէս չունի որևէ քաղաքացիական իրաւունք, մինչդեռ միւս բոլոր տեղական ցեղերը օգտւում են լայն իրաւունքներով և ինքնավարութեամբ այնպէս, ինչպէս անգլիացիք։ Ռուսաստանում մահմեդականների իրաւական դրութիւնը անհամեմատ աւելի լաւ է։ Այստեղ նա օժտուած է բոլոր այն իրաւունքներով, ինչ որ ունին երկրի միւս ցեղերն ու ազգերը։ Բայց չէ՞ որ 3—4 ամիս առաջ, հին ռէժիմի օրով, այստեղ ևս մահմեդական տարրը չէր վայելում քրիստոնեայ տարրի չափ իրաւունքներ և արտօնութիւններ։

Ինչու այս անիրաւութիւնը, ինչու այսքան ակներև անարդարութիւն սակայն. մի՞թէ, յիրաւի, մահմեդական ցեղերը ընդունակ չեն քաղաքակրթութեան և հետևապէս ընդունակ չեն կարող լինել օգտուելու քաղաքակրթութեան հետ անհրաժեշտօրէն կապուած քաղաքացիական իրաւունքներից և ազատութիւններից։

«Մահմեդականներից շատերը—ասում է Շախթախթինսկին—այդ բոլորի պատճառը համարում են ցեղակիցների միաբանութեան զգացմունքի թուլանալը, իրար յօգնելու և իրար թիկունք չը դառնալու յատկութիւնը։ Դրա համար էլ, այդպէս համարողները, միակ դարմանն են համարում՝ մահմեդական ցեղերի սերտ միութիւնը։ Եւ մասամբ այդ ուղղութիւնն է, որ ծնեցրել է պանիսլամականութեան գաղափարը։ Ուրիշներ էլ կան, որ մահմեդականութեան անկման պատճառը որոնում են նրա ռազմական թուլութեան և կամ մահմեդական պետութիւնների յետադէմ կառավարութեան սիստէմի մէջ։ Սակայն շատ քիչ են նրանք, որոնք մատը դնէին մահմեդականութեան անկ-

ման գլխաւոր, մեր յետամնացութեան էական պատճառի, այն է՝ մեր աշխարհայեացքի յետամնացութեան վրայ»։

Աշխարհայեացքից կախում ունի ազգերի կենսունակութիւնը, նրանց ոյժը կամ թուլութիւնը։ Ականջի օղ թող չինեն այս ճշմարտութիւնը՝ ոչ միայն մահմեդականները, այլ և նրանք, այն բոլոր ազգերը, որոնք կուզէին ապրել և չը հալուել ցեղերի մըրցութեան յորձանքի մէջ։

Եւրոպացին իր իրաւունքն է համարում տնօրինելու իր ճակատագիրը և օրէնքներ դնելու իր կեանքի համար։ Իրաւացի է նրա այդ մտածութիւնը։ Կեանքը զարգանում է անընդհատ և առաջադրում է իր նորանոր հարցերն ու պահանջները։ Չի կարելի միևնոյն օրէնքներով ու հասկացողութիւններով կառավարուել 50 տարի, ինչ մնաց հարիւրաւոր տարիներ։ Եւրոպացու կարծիքով աշխարհս նրա համար գոյութիւն ունի, որպէս զի մարդկային ցեղը զարգանայ ու կատարելագործուի գնալով։ Այս ամենը այնպիսի տարրական խորհրդածութիւններ են ու տարրական ըմբռնումներ, որ փոքր ի շատէ հասկացող մարդն անգամ հերքման համար չի սկսիլ վիճել։ Այս այսպէս լինելով հանդերձ՝ «մահմեդականները—ասում է Շահթախթինսկին—ոչ միայն չեն զարգանում և կատարելագործւում, այլ նոյն իսկ ժխտում են յառաջադիմութեան միտքը։ Սոցիալապէս՝ Իսլամը—անշարժութեան և դանդաղկոտութեան երկրպագուն է. („Соціально исламъ—Это поклоненіе застою и косности“. Турецк. Сборникъ“ ст. 107.)։ «Զարմանալի չէ ուրեմն, որ Եւրոպացիները մահմեդականներին չեն տալիս երկրագնդի վրայ գոյութեան որևէ իրաւունք և համարում են նրանց դուրս կորզելու խոտ՝ բանջարանոցի միջից» (նոյն տեղը, եր. 107)։

Եւ յիրաւի, «Իսլամի ուսուցմանը համեմատ, օրէնքներ դընելու իրաւունքը մարդկանց կեանքի համար՝ ոչ թէ մարդուն-իրենն է, այլ միմիայն Աստծուն է պատկանում։ Մահմէդը Աստըծուց ստացած օրէնքներն էր որ տուաւ ժողովրդին։ Կառավարիչ Սենատը, Օրէնսդիր մարմինը—ինքը—Աստուածն է միայն։

Եւ այսպէս, մարդը իրաւունք չունի իր կեանքի համար, իր կենցաղը ղեկավարող որևէ օրէնք սահմանել։ Նա պարտաւոր է անշարժ և անխախտ պահել «Աստուծոյ տուած» օրէնքները։

Այդ օրէնքների մի մասը գտնւում է Ղուրանի մէջ, իսկ միւս մասը հանուած է Մահմէդի կեանքից ու խօսքերից, այլ և նրա իմամների պատուէրներից։ Բոլոր այդ օրէնքները, հնամեայ օրէնքների այդ ժողովածուն է, որ կոչուել է շէրիէթ։

Իսկ թէ ինչ է «շարիաթը» և ինչպէս է եղել ու ինչպիսի հետևանքներ է թողել նա մահմեդական բոլոր ցեղերի կենցաղի ու հայեացքների վրայ—այդ մասին, Շահթախթինսկու խօսքերով իսկ, կը պատմեմ ես եկող ակնարկով»

Վ. ՓԱՓԱԶԵԱՆ

---

## ԶԱՐՄԱՀԱԼ ԳԱՒԱՌԻ ՀԱՅ ԳԻՒՂԱՑՈՒԹԵԱՆ ՎԻՃԱԿԸ

Պարսկաստանի Զարմահալ գաւառը բաղկացած է 12 հայաբնակ գիւղերից և 854 տուն բնակչութիւնից, որոնք գրեթէ բոլորն էլ աղքատ հողագործներ են և բնութեան ժրաջան և անխոնջ մշակներ։

Զարմահալ գաւառը պատկանում է Բախտիարցի պարսիկ խաներին, որոնք միշտ կեղեքել ու հարստահարել են խեղճ ժողովրդին գործ դնելով նորա գլխին ամեն տեսակ բռնութիւն ու կեղեքում։ Ամբողջ տարիների ընթացքում, գիւղացիները չարչարուել ու քրտինք են թափել, բայց ափսոս որ արդիւնքը իրենց համար չի եղել, իրենց քրտնալից աշխատանքի դառն վաստակը իրանք չեն կերել ու վայելել, որովհետև իրանք չեն ունեցել սեփական կալուածներ, սեփական հողեր, այլ նրանք մշտապէս չարչարուել են օտարի համար, ու մշակել օտարի հողերը, և իրենց հալալ վաստակը լցրել անխիղճ տէրերի գրպանը։

Մի խօսքով խեղճ շինականը մինչև օրս մի կերպ պահել, պահպանել է իր տնտեսական կացութիւնը, մի կերպ պահել ու պահպանել է իր ընտանիքը, ի հարկէ միշտ նեղ ու աննախանձելի վիճակում։ Բայց այժմ բոլորովին քայքայուեց այդ աննախանձելի վիճակն ևս ու նրա համար ծնուեց մի օտար դրութիւն, բոլորովին մի ուրիշ վիճակ, աւելի վատ, աւելի վատթար քան թէ նախկինը, աւելի սև, քան անցեալը...։

Այս դառը վիճակի և քայքայման պատճառը եղաւ մարախը, որը երևան եկաւ Զարմահալում անցեալ տարուայ յունիս 20-25-ին ու տարածուեց բոլոր գիւղերի դեռ կանանչ ու դեռահաս արտերի ու նորաբողբոջ, ծաղկալից մարգագետինների մէջ։

Ի՞նչ անէր խեղճ գեղջուկը, այդ ինքն էլ չ՚գէտէր, նա մնաց տարակուսած, որովհետև ցորենը դեռ կանանչ էր իսկ գարին՝ նոր հասնելու վրայ։ Վերջապէս նա ճարահատ մնալով վերցրեց իր ժանգոտած մանգաղը և վազեց դէպի արտ, սկսեց հնձել դեռ կանանչ հացահատիկները և մի կերպ կարողացաւ 10-ից մի բաժինը ազատել։

Շուտով վրայ հասաւ աշունը։ Դժբաղդ հողագործը շատ դէս-դէն ընկնելուց յետոյ կարողացաւ մի կերպ ձեռք բերել իր աշնանացանի բաժին սերմը և ցանեց հերկած արտի մեծ մասը։ Բայց ինչպէս պահէր իր ընտանիքը, ինչով կերակրէր նրան։ Նա ստիպուեց անպատճառ ծախել իր երկար տարիների աշխատակից ընկերին, իր լծկան եզին, իր տարիների ընթացքում կերակրող կովին, այծին, և իր տան իրեղէնների մեծ մասը, որովհետև ցորենը շատ թանգ էր (բեռը 12-14 թուման)։ Վերջապէս հասաւ նոր գարուն, բայց նա փոխանակ արդարացնելու գիւղացու յոյսերը, ընդհակառակն հիասթափեցրեց։ Գարունը կենդանութիւն տուեց մարախի անշունչ ձագերին (քօռ) թագնուած արտերի ու դաշտերի ճեղքուածների ու արանքների մէջ։ Դուրս գալուն պէս սկսեցին ուտել դեռ կաթնուկ, բոլորովին դեռահաս հացահատիկները և խոտը։

Նորէն փչացաւ գիւղացու աշխատանքը և նա դատապարտուեց թշուառութեան։

Ցանքը ոչնչացաւ. և հիմա գաւառիս թէ աղքատ և թէ հարուստ դասակարգը շրջում են անգործ, նրանց գրեթէ $^3/_4$-ը թողել է իր տունն ու տեղը և դուրս է եկել Պարսկաստանի զանազան կողմերը հաց որոնելու։ Բայց ո՞ւր է հաց ո՞ւր է գործ, նա հազիւ կարողանում է կշտացնել միայն իր փորը.. իսկ ընտանի՞քը, զաւակնե՞րը... սովից մեռնում են, որովհետև հաց չկայ։

Ահա 3-4 ամիս է, որ գաւառի ամբողջ բնակչութիւնը կերակրւում է խոտ ու թանով. բայց ներկայումս այդ էլ չի ճարւում, այդ էլ է վերջացել։ Բազմաթիւ մանուկներ, բազմաթիւ մարդիկ առաւօտից մինչև երեկոյ անդադար կանչում են «հաց.. հաց.. մեռնում եմ..»։ Ի՞նչ անի խեղճ գիւղացութիւնը, այդ ինքն էլ չգիտէ։

Մի խօսքով Զարմահալ գաւառի ներկայ դրութիւնը շատ դառն է և անտանելի, իսկ կարիքը շատ մեծ։ Գաւառը չունի ազգային հաստատութիւններ, որոնք կարողանան մատակարարել նրանց հարկաւոր պէտքերը։ Եթէ ուրիշ վայրերի ազգային հաստատութիւնները չը մտածեն նրանց համար և չօգնեն, գրեթէ ժողովրդի մեծ մասը սովամահ պիտի լինի։

Զարմահալի հայութիւնը շուտափոյթ օգնութեան կարիք ունի։

Կ. Տէր-Մանուրեան

# ՌՈՒՍԱՀԱՅՈՑ ՀԱՄԱԳՈՒՄԱՐ *)

II

## ԸՆՏՐԱԿԱՆ ՀՐԱՀԱՆԳ

*1) Ռուսահայոց համագումարի ընտրութիւններին չեն մասնակցում միայն դատարանի վճռով ազատութիւնից զրկուածները։*

*2) Որպէս զի յարմարութիւն ստեղծուի ընտրողների համար, աւելի հեշտութեամբ տալու իրանց ձայնը՝ մեծ քաղաքները (օր. Թիֆլիս, Բագու...) կարելի է բաժանել մի քանի ընտրական շրջանակների (թաղերի)։*

*3) Իւրաքանչիւր շրջանի ընտրութիւնները կազմակերպելու համար՝ այդ շրջանի կենտրոններում կան միջկուսակցական շրջանային յանձնաժողովներ։*

*4) Շրջանային յանձնաժողովները իրանց կողմից կազմակերպում են շրջանակային ընտրական յանձնաժողովներ, որոնք կազմակերպում և ղեկավարում են շրջանակներում (գիւղ, քաղաք) ամբողջ շրջանակի ընտրական գործը։*

*5) Ձայն տալ կարելի է պատգամաւորական թեկնածուների՝ ամբողջ շրջանի համար առաջարկուած անուանացուցակներից մէկին միայն։ Ընտրութիւնը կատարւում է գաղտնի, ընտրական տոմսի յանձնումով։*

*6) Ամէն մի ընտրական տոմսի վրայ պէտք է տպագրուած կամ գրուած լինի մի որ և է կուսակցութեան կամ խմբակցութեան անուն միայն։ Բոլոր տպագրուած տոմսերը, ինչ կուսակցութեան կամ խմբակցութեան էլ պատկանելիս լինեն միաձև, միաչափ և միևնոյն թղթի վրայ միևնոյն տառերով տպագրուած։ Դրանք կը պատրաստուեն Թիֆլիսում, որտեղից և կը ղրկուեն շրջանները։ Ամեն մի ընտրող իր ցանկացած ընտրատոմսը անձամբ ծալած տալիս է յանձնաժողովի նախագահին, որն և ընտրողի ներկայութեամբ գցում է կնքած արկղի մէջ։ Այս պահանջներին չը համապատասխանող ընտրատոմսերը հաշուի չեն առնուում։*

*7) Ընտրութիւնների կանոնաւորութեան վրայ հսկում է յանձնաժողովը, որը պէտք է հետևի, որ ընտրութեան առեանում միայն ընտրատոմսեր տրուեն, և թոյլ չը տրուի նախընտրական պայքար, ինչպէս և որևէ ձևով չը խանգարուի ընտրութեանց կանոնաւորութիւնը։*

*8) Ձայնտուութեան յաջորդ օրը, բաց նիստում, ներկայութեամբ այդտեղ գտնուող ընտրողների՝ ընտրական յանձնաժողովը հաշւում է, թէ որչափ ձայն է ստացել ամեն մի կուսակցութիւն կամ խմբակցութիւն։ Հետևանքները գրի են առնւում արձանագրութեան մէջ, որ և ստորագրում են նախագահը և յանձնաժողովի անդամները։ Այդ արձանագրութիւնները բոլոր վայրերի յանձնաժողովները անմիջապէս ուղարկում են իրանց շրջանակային յանձնաժողովներին, որ և դարձեալ պաշտօնական նիստում կատարում է ամբողջ շրջանակի ձայնտուութեան հաշւումը և գրի անցնում հետևանքները ու անմիջապէս ուղարկում է շրջանային ընտրական յանձնաժողովին։*

*9) Շրջաններում պատգամաւորները ընտրւում են համեմատական սկզբունքով (տես յօդուած 13)։*

*10) ընտրական շրջանային յանձնաժողովները ստանալով շրջանակներից ձայնտուութեանց հետևանքները՝ ձևակերպում են ընտրութեան հետևեալ կերպով.*

*Իւրաքանչիւր ընտրական շրջանում ընտրուելիք բոլոր պատգամաւորների թիւը բազմապատկում են այս կամ այն խմբակցութեանը տրուած ձայների թուի վրայ և արտադրեալը բաժանում ամբողջ շրջանում անխտիր բոլոր անուանացանկերին տրուած ձայների թուի վրայ։ Այդ ձևով ստացուած թիւը ցոյց կը տայ, թէ ամեն մի խմբակցութեան կողմից ներկայացուած անուանացանկից քանի հոգի են ընտրուած, հաշուելով ըստ համարգրութեան կարգի, սկսած առաջին թեկնածուից։ Եթէ ամբողջ շրջանում ընտրուած պատգամաւորների թիւը պակաս լինի պահանջուած թւից, այդ պակասը կը լրացուի մնացորդներով, սկսած ամենամեծ մնացորդից։*

*11) Շրջանային ընտրական յանձնաժողովները կազմում են արձանագրութիւն, որի մէջ գրւում է նիստի տեղը, ժամանակը, ամբողջ շրջանում ընտրութեան մասնակցածների թիւը և եղած բողոքները։ Արձանագրութիւնը կարդացւում է բաց նիստին, ստորագրւում և հաստատւում յանձնաժողովի անդամների և քարտուղարի կողմից։*

*12) Ընտրութեան հետևանքները շրջանային յանձնաժողովները 3 օրուայ ընթացքում առանձին զեկուցագրով ուղարկում են Թիֆլիս, կենտրոնական ընտրական յանձնաժողովին։ Նոյն շրջանային յանձնաժողովները պատշաճ վկայական են տալիս ընտրուած պատգամաւորներին։ Բողոքներ եղած դէպքում ուղարկւում են ազգային համագումարի դիւանի անունով։*

*) Տես «Համբաւաբեր» № 26

## ԱՐԵՒՄՏԱՀԱՅ ՈՒՍՈՒՑՉԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐ

### ՈՐՈՇՈՒՄՆԵՐ

*1) Առժամեայ Կեդրոնական Վարչութեան բացը գոցելու համար, համագումարը ստիպողական պարտք դրաւ մասնաճիւղերու վրայ, գանձելու իրենց ապառիկ անդամավճարներն ու մուտքի փողերը և ըստ հին կանոնագրի իրենց բաժինը վճարել անյապաղ Կեդր. Վարչութեան։ Այլևս դրամական ցենզ չներկայացնող մասնաճիւղերը լուծուած կը համարուեն։*

*2) Որոշուեցաւ որ Ա. Շրջանային Ներկայացուցչական Խորհուրդի հրաւէրը Կեդր. Վարչութեան կողմէ ըլլայ, որմէ վերջ, Խորհուրդի ընտրած Յատուկ դիւանի իրաւասութեան կը վերաբերի այդ խնդիրը։ Խորհուրդին կը մասնակցին դրամական ցենզ ներկայացնողները միայն։ Խորհուրդիս պատգամաւորներու ծախսի հոգատարութիւնը թողնուեցաւ Կեդր. Վարչութեան։*

*Երկար վիճաբանութեան նիւթ եղաւ Խորհուրդի իրաւասութեան խնդիրը։ Առաջարկուած քանի մը բանաձևերէն անցաւ հետևեալը՝ 28 ձայնով.*

*ա) Համագումարէն յետոյ, Շրջանային Ներկայացուցչական Խորհուրդը միակ իրաւասու մարմինն է, որ քոնթրոլի դեր կը կատարէ Կեդր. Վարչութեան վրայ, որպէս զի նա դուրս չելլէ համագումարի գծած սահմանէն։*

*բ) Բոլոր այն խնդիրները, որոնք չեն նախատեսնուած կանոնագրին մէջ, Ներկայացուցչական խորհուրդը իրաւունք ունի վճռելու։*

*գ) Ներկայացուցիչները պէտք է բերեն իրենց շրջանի կարիքներու և կենսական հարցերու, ինչպէս և գործունէութեան մասին զեկուցումներ և առաջարկներ։*

*դ) Խորհուրդը կը կազմէ այս տարուան նախահաշիւը։*

*ե) Խորհուրդը Կեդր. Վարչութեան տարեկան գործունէութեան մասին մանրամասն զեկուցում կը բերէ յառաջիկայ համագումարին։*

*զ) Կեդր. Վարչութիւնը Ներկայացուցչական Խորհուրդին կը*

մասնակցի մէկ ձայնի իրաւունքով, իսկ Վարչութեան գործերու քննութեան առեն՝ նա կը կորցնէ իր ձայնի իրաւունքը։

է) Խորհուրդը կը քննէ բոլոր ճիւղերու հաշիւները։

ը) Խորհուրդը եթէ պէտք ունենայ, կը թելադրէ Կեդր. Վարչութեան՝ հրաւիրել բացառիկ համագումար։ Ա. Շ.

# Գեղարուեստ

***

Դու նորից իջար իմ կեանքի ճամբին,
Իմ մոլոր ճամբին, հեռու և անլոյս,
Նորից ժպտացին աչերդ նրբին
Նոր-նոր կարօտով տիրեցին հոգւոյս։

Իրար դէմ նստած խօսում ենք երկար,
Անցեալի քաղցրիկ յուշերը թերթում.
Ժպտում ենք իրար, ժպտում խանդավառ,
Լուռ ակնարկներով մեր սիրտը շանթում։

Կարօտ ու ժպիտ, արցունք ու կարկաչ
Խառնում ենք իրար, ձուլում անյատակ.
Սէր են գեղգեղում թփերը կանաչ,
Մեղմում են հիւսում առուակ ու գետակ։

Բագու Գ. Ղազարեան

# Գաւառ

ՆԱԼԲԱՆԴ գիւղ (Ալէքս. գ.)

Մեր և շրջակայ գիւղերում արդէն վերջացել է խոտահարքը և սկսել հացահատիկի քաղը։ Այս տարի մեզ մօտ բերքը միջակից ցածր է, տեղ-տեղ նոյն իսկ վատ. մանաւանդ այդ կողմից անմխիթար պատկեր են ներկայացնում Ալէքսանդրապոլի մօտիկ շրջանները։

Շիրակի մի զգալի մասը այժմեանից իսկ կանգնած է սովի ուրուականի առաջ։ Անհրաժեշտ է այժմեանից իսկ ապահովել մեր շրջանը ալիւրով, կամ հացահատիկով, այլապէս մի քանի ամիս ևս և գիւղացիք կը զրկուեն բոլորովին հացից և սովը կը դառնայ անխուսափելի։

Խ. Համբարեանց

# Տարեգիր Կ. Հ. Բ. Ընկ.

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է՝

—Գորուայ ճիւղի վարչութիւնից պ. Սիմէօն Զաքունեանից նուիրաբերած իւր մօր Եկատերինէի յիշատակին յօգուտ գաղթականների 50 ռ.։

—պ. Գէորգ Յարութիւնեանից յօգուտ որբերի 25 ռ.։

## ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷ

1) Լոնդոնից պ. Ս. Յարութիւնեանի հասցէով ստացուել է օր. Ռոբինզոնի միջոցաւ հետեւեալ գումարները.— 6000 ռ. յօգուտ որբերի, 3000 ռ. Ալէքսանդրապոլի որբանոցի օգտին և 2125 ռ. յանձնելու տիկնայք Խրիմեանին և Սաֆարեանին յօգուտ Վանի կանանց աշխատանքի տան։

Առաջին գումարները մուծուած են Կոմիտէի գանձարան ի գործադրութիւն, իսկ երրորդը՝ 2125 ռ. Վաճառականական բանկի միջոցաւ փոխադրուած է ըստ պատկանելոյն։

2) Ցարսկի-Կոլոդցի որբանոց-հիւանդանոցի համար, ուր տեղաւորուած են բացառապէս քոստ-բորոտ հիւանդներ, Կոմիտէն առանձին գրութեամբ դիմեց փախստակ. գործադիր խորհրդին խնդրելով նրա հոգատարութիւնը, յանձնել Կոմիտէին նոյն նախահաշուով, ինչ որ ստանում է Քաղաքների Միութիւնը։

3) Հայկ. Կենտ. Կոմիտէն առանձին շրջաբերականներով առաջարկել է բոլոր լիազօրներին և ճիւղերին՝ անմիջապէս հաղորդելու՝ իրենց շրջանում եղած փախստականների թուի մասին։ Տեղեկութիւնները պահանջւում են գաղթ. նպաստի նախահաշիւը կազմելու համար։

# Քրոնիկոն

Թիֆլիսի ակումբների միութեան վարչութիւնը որոշել է ակումբներին տալ կուլտուրական-կրթական բնոյթ՝ կազմակերպելով դասախօսութիւններ, համերգներ և այլն։

—Անդրկով. Առանձին Կոմիտէի կողմից Թիֆլիսի նահանգի ժողովրդական դպրոցների ուսուցիչների մանկավարժական դասընթացների համար միջոցներ չյատկացնելու պատճառով օգոստոսին դասընթացքները չեն բացուի։

—Ներքին գործերի մինիստրութիւնը յայտնել է Անդրկ. Առանձին Կոմիտէին, որ մամուլի գործունէութեանը հետամտել կարող է միմիայն դատաստանական իշխանութիւնը։ Մամուլի վրայ տուգանք չի դրուելու։

—Արտասովոր շոգերի պատճառով Գանձակի նահանգում, առանձնապէս Արէշի գաւառում, տիրում է կատարեալ երաշտ։ Դիւղացիները այդ առթիւ հեռագրով խնդրել են Անդրկովկ. Առանձին Կոմիտէին, որ բամբակի, բրնձի արտերն ու խաղողի այգիները փրկելու համար ջուր բաց թողնեն Հալազան գետից։ Այս առաջարկութիւնն իրականացնելու համար գիւղացիներն առաջարկում են իրենց ձրի աշխատանքը ջուր բերելու գործում։

—Մեզ հաղորդում են, որ Բագւում կազմուել է «Երիտասարդ Գրասէրների Միութիւն», որ պարբերաբար տալիս է դասախօսութիւններ և երեկոյթներ։

—Երևանում յուլիսի 8-ին պատահել են անկարգութիւններ, կողոպտուել են մի քանի խանութներ. ժողովուրդը սարսափի մէջ է, կտրուկ միջոցների կարիք կայ։

—Վոլինի գնդի զինուորների համերգ-միտինգը, որ կայացաւ Թիֆլիսի ժողովարանում, ունեցաւ մեծ յաջողութիւն։ Ազատութեան փոխառութեանը բաժանորդագրուելու անհրաժեշտութեան մասին խօսեցին՝ Կովկ. բանակի գլխաւոր հրամանատար Պրժևալսկին, Ա. Ի. Չխենկելին և քաղաքագլուխ Ալ. Խատիսեանը և մի քանի զինուոր հռետորներ. նոյն երեկոյեան փոխառութեանը գրուեցին 900,000 ռ.։

# Համաշխարհային պատերազմը

Ռուսաց արեւմտեան ճակատում յուլիսի 7-ից Պենեակի-Գորբուզով ուղղութեամբ գերմանացիները սկսեցին յարձակուել ռուսների դէմ։ Այդ յարձակումը սկսուեց այն ժամանակ, երբ

Պետրոգրադում տեղի էր ունենում հակայեղափոխական արիւնալի ցոյց և երբ ճակատում բոլշեւիկները ուժեղ ագիտացիայով թուլացրել էին զօրքի ռազմական ոգին։

Գերմանացիք, որ ռուս ոյժի հետ համեմատած աւելի քըչուոր և աւելի տկար ոյժ էին կազմում՝ առաջ խաղացին ամբողջ ճակատում։ Ռուս գնդերը չանսալով սպաների յորդորներին, ինքնակամ յետ քաշուեցին թշնամու առջևից։ Զոլոչեսկու ուղղութեամբ յունիսի 18-ին քաջարի յարձակում գործող ռուս բանակը առանց դիմադրութեան տեղի տուեց թշնամու թոյլ ոյժերի առաջ։

Թշնամու յարձակումն շարունակուեց յուլիսի 9-ին, 10-ին միևնոյն յաջողութեամբ։ Վիլենսկու ուղղութեամբ ռուսական մի գունդ դիմադրութիւն ցոյց տուեց, բայց ստիպուեց յետ քաշուել միւս գնդերի դաւաճանութեան պատճառով։

Տարնոպոլը պաշտպանող 1-ին գուարդեան կորպուսը առանց ոեէ դիմադրութեան, կամովին յետ քաշուեց։ Հաւատարիմ մնացած Սեմենովսկի, Պեպրօաժենսկի գնդերը շարունակում են կըռիւը Տարնոպոլից հարաւ արևելք։ Թշնամին անցաւ Սերետ գետի ձախ ափը և սկսաւ նեղել մեր զօրամասերը։ Սմոլենսկի և Կոլիվանսկի գնդերը յամառութեամբ դիմադրելով թշնամուն, անցան հակայարձակման։ Սարինայից արևմուտք գերմանացիք պատռեցին Տրեմբոլեա-Ռոմանովկա-Պետլիկովցէ մեր դիրքերի շարքը։

Դնեստրից մինչև Կարպատ մեր զօրքը շարունակում է յետ քաշուել։ Յուլիս 11-ին Կարպատներում գեն. Ռադօղի և ռումանական գեն. Աւերեսկու միացեալ զօրքերը առաջ շարժուեցին, գրաւելով Մերեշկի և Վոլոշկան գիւղերը և գերելով մի քանի հարիւր հոգի, 19 թնդանօթ և շատ ռազմանիւթեր։ Պատռուած է թշնամու ամենաուժեղ գիծը։

Ամբողջ ճակատում լարուած թնդանօթաձգութիւն է։ Սպասւում է յեղափոխական կառավարութեան ուժեղ միջամտութեան, կարգապահութիւնը հաստատելու համար լքուած զօրամասերում։

Ֆրանս-անգլիական ճակատում նմանապէս թշնամին յարձակ-ղական է անցել. Բրէան-Լանուա գծի վրայ գերմանացիների գրոհները անօգուտ անցան։ Սերնի, Միլլի և Կալիֆորնայի շրջանում թշնամու յարձակումն յաջողութիւն չունեցաւ։ Ֆրանսացիք դիմադրում են մեծ կորովով։

# ՏԵՂԵԿԱՏՈՒ

*Ախալցխա, յուլիսի 6-ին*

Կ. Հ. Բ. Ըն. Ախալցխայի ճիւղի վարչութիւնը 1917 թ. յունուարից մինչև յուլիսի 1-ը ստացել է ճիւղի օգտին նուէրներ հետևեալ անձերից.—Գ. Արարեանից իւր հանգուցեալ եղբօր Մարտիրոսի յիշատակին 25 ռ., Տէր-Անանիկեանից նոյն յիշատակին 30 ռ., Եղբ. Մ. և Ս. Նազարէթեանից իրանց հանգ. հօր՝ Կարապետ Նազարէթեանի յիշատակին 100 ռ., Աղէք. Մնդոյեանից՝ հանգ. Կ. Բաղդասարեանի յիշատակին 25 ռ., Ս. Աղայեանից՝ իւր հանգուցեալ քոյրերի յիշատակին 25 ռ., Եղբ. Գր. և Խ. Աղաջանեաններից՝ հանգ. Եղիազարեանի յիշատակին 25 ռ., Մ. Ծատուրեանից՝ Արբ. Զամանեանի պսակ. հանգ. հաւաքած— 22 ռ. 55 կ., Արմ. Սարաֆարեանից՝ իւր հանգ. հօր յիշատակին 55 ռ., Յ. Շիրինեանից նոյն յիշատակին 25 ռ., Յովհ. և Կար. Ղասաբաշեաններից իրանց հանգուցեալ հօրեղբօր յիշատակին— 100 ռ.. Հանգուցեալ Արտ. Իգիթխանեանի յիշատակին Թիֆլիսի ընկերներից և ծանօթներից 135 ռ., որ նուիրել են հետևեալները՝ Գր. Հէպիպեանը—15, Խ. Մէհտարճեանը—15, Ա. Տօնականեանից—15, Լ. Սարգսեանից—15, Ս. Շէխոյեանից—15, Յ. Ինճիկեանից—15, Ե. Օքոնեանից—5. Մ. Մէհտարճեանից—10, Արտ. Սիւտճեանը—10, Հ. Աշճեանը—15 և Վ. Սուքիասեանը—5 ռուբլի։ Վերոյիշեալ նուիրատուներին վարչութիւնս յայտնում է իւր շնորհակալութիւնը։

Վարչութեան նախագահ՝ Ս. Թէլեմիշճեան
Քարտուղար՝ Լ. Հէպիպեան

# ԿՈՉ

Հայրենակիցներ,

Անցեալ տարի Էրզրումի գրաւումէն անմիջապէս յետոյ կազմուած Տրապիզոնցիներու Հայրենակցական Միութիւնը, իր շուրջը համախմբած Կովկասի ու մասնաւորապէս Պաթումի Տըրապիզոնցիները, բաւական եռանդ ու գործունէութիւն ցոյց տուաւ, օգնելու համար տաճկական եղեռնէ ազատուած մեր դժբաղդ հայրենակիցներուն ու որբերուն։

Սակայն երկար չտևեց այդ ոգևորութիւնն ու եռանդը որ այնքան գեղեցիկ կերպով նկատուեցաւ սկզբի օրերուն. անհատական ձեռներէցութիւնը նուազեցաւ, դրամական նուիրաբերութիւնները գրեթէ սպառեցան ու այսօր Հայրենակցական Միութիւնը գրեթէ կազմալուծուած վիճակի մէջ է։

Հայրենակիցներ,

Զպէտք է խարուել ներկայ կայուն վիճակէն. վաղուայ օրը չենք գիտեր թէ ինչ անակնկալներ պահած է մեզ համար, մէջ ընդ մէջ հազար մէկ փորձութիւններէ ու տառապանքներէ յետոյ մեզ հասնող տարագիրները ապացուցին թէ հեռու, օտար քաղաքներու և անապատներու մէջ դեռ կան մեր սիրելիներէն որոնք իրենց կեանքը գերութեան մէջ կը մաշեն, սպասելով այն օրին, երբ հնարաւորութիւն պիտի ունենան վերադառնալու իրենց քանդուած օջախները…։ Պատրաստ լինենք, հայրենակիցներ, ընդունելու և խնամելու մեր թշուառ ազգակիցները, չսպասենք վերջին ժամուն, անտարբերութիւնն ու թուլութիւնը ամեն մէկիս համար դաւաճանութիւն է Հալէպի ու Միջագետքի տարագիրներուն հանդէպ։

Պաթումի Տրապ. Հայրենակ. Միութեան նորակազմ Վարչութիւնը, այդ գործը ստանձնեց վստահ Ձեր բոլորից հայրենասիրական զգացմունքներուն, առանց Ձեր աջակցութեան ու օգնութեան Վարչութիւնը ոչինչ չի կարող ընել։

Վարչութիւնը սոյն կոչով կը դիմէ Ձեզ բոլորիդ, օգնեցէք ով ինչով կարող է, օգնեցէք բարոյապէս և նիւթապէս. Ձեր բերած նուիրաբերութիւնները պիտի ամոքեն երեք տարիէ ի վեր թիւրքական դժոխքի մէջ տապակուող հայրենակիցներու տառապանքը։

Պաթումի Տրապիզոնցիներու Հայրենակցական Միութեան
ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

Դրամ և ուրիշ ամեն կարգի թղթակցութիւններ պէտք է ուղղել Վարչութեան Նախագահին՝ հետևեալ հասցէով.
А. Есаянъ, *Михайловская ул., Батумъ.*

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ
Հրատ. Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ



Тип. «СЛОВО» Гимназическая ул. № 1